# ՏԻԳՐԱՆ ՉՕՒԽԱՃԵԱՆ

## ԱՒԷ ՄԱՐԻԱ

Խմբագրութիւն, ներածութիւն եւ ծանօթագրութիւն՝

**ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ**

Գահիրէ

2000

Կը ձօնեմ մօրս՝
Արմինէ Աւագեանին
(ծնեալ Մուրատեան)
Հ. Ա.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ՝
ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ
«ՍԱԹԵՆԻԿ Ճ. ՉԱԳԸՐ ՀԻՄՆԱԴՐԱՄ»-ԻՆ
15, Emad El-Din street, Cairo - 11111, Egypt

Տպագրութիւն՝ «Նուպար Տպագրատուն», Գահիրէ

# ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կու զանք մեր խորին շնորհակալութիւնները յայտնելու Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Գահիրէի մասնաճիւղի վարչութեան եւ իր յարգելի ատենապետ տիար Պերճ Թէրզեանին, որոնք յօժարութեամբ ընդունեցին եւ ամէն դիւրութիւն ընծայեցին տպագրելու այս աշխատութիւնը:

Շնորհակալութիւն՝ Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի տնօրէնութեան եւ երաժշտական բաժինի գիտաշխատողներուն, որոնք տրամադրեցին մեզի Չուհաճեանի անզին ձեռագիրները:

Շնորհակալութիւն՝ Փարիզի «Նուպարեան» մատենադարանին, որ ղրկեց «Աւէ Մարիա»-յի Փարիզի տպագրութեան պատճէնը:

Շնորհակալութիւն՝ Երեւանի Ազգային Գրադարանի, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի «Թորգոմեան» մատենադարանի, «Արեւ» օրաթերթի, Յուսաբեր Մշակութային Ընկերակցութեան «Փալանճեան» մատենադարանի վարիչներուն, ինչպէս նաեւ բազմաթիւ ազնիւ անհատներու, որոնց գրադարաններուն հարուստ նիւթերէն մեծապէս օգտուեցանք:

Շնորհակալութիւն՝ բանասէր Տիգրան Գէորգեանին, լեզուական եւ խմբագրական նշումներուն համար:

Շնորհակալութիւն՝ տիար Մարտիրոս Պալեանին, հրատարակչական վերահսկողութեան համար:

Հ. Ա.

# ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ

Մեծանուն երաժշտահան Տիգրան Չուհաճեանի (1837-1898) մանր կտաւի երկերու շարքին իր ուրոյն տեղը կը գրաւէ «Աւէ Մարիա»-ն:

Նրբաքանդակ, խորիմաստ, ներաձիգ ստեղծագործութիւն մը, որ կը յատկանշուի իր կուռ յօրինուածքով, զուսպ յուզականութեամբ, բնաբուխ մեղեդայնութեամբ:

Պատմական տեղեկութիւններ «Աւէ Մարիա»-յին մասին՝ խիստ սակաւաթիւ են:

Ան՝ առ նուազն մէկ անգամ, նուագուած է Չուհաճեանի կենդանութեան ժամանակ, հաւանաբար՝ հեղինակին ղեկավարութեամբ[1]:

Կը յիշատակուի՝ թէ Յարութիւն Սինանեան[2] իր նուագախումբով կատարած է զայն[3]:

1917 թուականին կը մեկնաբանուի Ֆրանսայի Լա Ռոշել քաղաքի եկեղեցիին մէջ[4]:

1994 թուականի Յուլիս 6-ին, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան «Թէքէեան» սրահին մէջ, Չուհաճեանի օտար լեզուներով յօրինած մեներգներու կատարումով ելոյթ կ'ունենայ Հալա Էլ Շապուրի[5], որ կը մեկնաբանէ նաեւ «Աւէ Մարիա»-ն, դաշնակի նուագակցութեամբ Հ. Աւագեանի[6]:

Այնուհետեւ, 1997 Դեկտեմբեր 30-ին, Գահիրէի օփերայի փոքր դահլիճին մէջ, եգիպտացի մեներգիչներու երգահանդէսին՝ Հալա Էլ Շապուրի կրկին կը մեկնաբանէ զայն, մեծ հետաքրքրութիւն առաջացնելով ունկնդիրներուն մօտ[7]: Երգչուհիին կը նուագակցէր Մայա Կվինէրիա[8]:

1999 Յունուար 5-ին, Փարիզի ՀԲԸՄ «Ալեք Մանուկեան» Մշակութային Կեդրոնին մէջ, խթումի հանդիսութեան, ճափոնցի արուեստագիտուհիներ՝ թաւ ջութակահարուհի Այա Սաքաքիպարա[9] եւ դաշնակահարուհի Մասաքօ Շիմուրա[10] «փառաւոր կերպով»[11] կը նուագեն «Աւէ Մարիա»-ն:

«Աւէ Մարիա»-ն՝ ինչպէս Չուհաճեանի մոռցուած բազմաթիւ այլ երկեր, արժանի է լայն տարածումի եւ լուրջ ուսումնասիրութեան:

*

* *

Ինչպէս կ'երեւի՝ Չուհաճեանի տպագրուած դաշնակի ստեղծագործութիւններուն վերջաւորութեան ցուցակագրուած երկերու ցուցակէն, «Աւէ Մարիա»-ն հրատարակուած է հեղինակի կենդանութեան, զոր չկարողացանք ձեռք ձգել:

1914 թուականին, Փարիզի մէջ, Լ. Համբարձումեանի[12] ջանքերով կ'իրականանայ «Աւէ Մարիա»-յի երկրորդ տպագրութիւնը՝ երգի եւ դաշնակի համար: Պաքուի «Թատրոն եւ երաժշտութիւն» հանդէսի թղթակիցը իրաւացիօրէն կը նկատէ՝ թէ «ո՜րչափ գնահատելի եւ արժէքաւոր է պարոնի [իմա՝ Լ. Համբարձումեանի, Հ.Ա.] ձեռնարկութիւնը»[13]: Այս տարբերակն է՝ զոր կը կատարուի Գահիրէի եւ Փարիզի մէջ, 1994,1997 եւ 1999 թուականներուն:

«Աւէ Մարիա»-յի տարբեր ձեռագիրները այժմ կը գտնուին Երեւանի «Չարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի երաժշտական բաժինի Չուհաճեանի դիւանին մէջ:

Ի մի բերելով այս ձեռագիրները եւ 1914 թուականի Փարիզի տպագրութիւնը, կ'առաջանայ ստեղծագործութեան երկու տարբերակ, որոնք կը համախմբուին հետեւեալ կերպով.

**Ա. տարբերակ** (այսուհետեւ՝ Ա.)

ա.-Ձեռագիր թիւ 27՝ ինքնագիր նուագագրութիւն:

բ.-Ձեռագիր թիւ 28՝ թիւ 27-ի առանձին նուագամասերը, ոչ ինքնագիր:

**Բ. տարբերակ** (այսուհետեւ՝ Բ.)

ա.-1914 թուականի Փարիզի տպագրութիւն՝ մեծծօ-սոփրանոյի կամ պարիթոնի համար, դաշնակի նուագակցութեամբ:

բ.-Ձեռագիր թիւ 28ա՝ մենանուագ ջութակի նուագամաս, ինքնագիր[14]:

Ձեռագիրներուն վրայ ոչ մէկ թուական յիշատակուած է: Որոշելու համար՝ թէ այս աղբիւրներէն որ մէկը կը յարի Ա.- ին եւ որ մէկը՝ Բ.-ին, ուղեցոյց հանդիսացաւ փոքր փաստ մը: Ձեռագիր նուագագրութեան (թիւ 27) մէջ կատարուած են սրբագրութիւններ, որոնցմէ ոմանց սկզբնական գրութիւնը՝ նախ քան սրբագրուիլը, յստակօրէն ընթեռնելի է: Անոնցմէ երկու հատածի (հատածներ 10 եւ 12) սրբագրութիւնները նման են Փարիզի

տպագրութեան [15], որ ենթադրել կու տայ՝ թէ վերջինս գրուած է թիւ 27-էն ետք:

Անշուշտ, այս փաստը տկար է, սակայն առ այժմ աւելի համոզիչ փաստ չունենալով, զայն կ'ընդունինք իբրեւ հիմք:

Ա.-ը պատրաստ պէտք է եղած ըլլայ մինչեւ 1880 թուականը [16] իսկ Բ.ը՝ ըստ Փարիզի հրատարակութեան վրայ յիշատակուած թուականին, յօրինուած է 1883-ին:

1880 Ապրիլ 3-ին, Թիֆլիսի Ամառնային Թատրոնին մէջ, Թրքահայ սովեալներուն ի նպաստ տրուած նուագահանդէսին, Սիրանոյշ [17] ծրագրած էր երգել Զուհաճեանի «Աւէ Մարիա»-ն [18], որ կը նշանակէ՝ թէ ստեղծագործութիւնը արդէն պատրաստ էր մինչեւ 1880 թուականը: Եթէ ճիշտ է Լ. Համբարձումեանին հաղորդած թուականը՝ 1883, Թիֆլիսի մէջ կատարուելիքը Ա.- ն էր: Ուրիշ հարց, թէ Սիրանոյշ վերջին պահուն զայն կը փոխարինէ Թիֆլիսահայ երաժշտահանի՝ Գ. Ղորղանեանի ռոմանսով մը, հաւանաբար յարգած ըլլալու համար բնիկ հասարակութիւնը, մանաւանդ որ նոյն յայտագիրին մէջ նուագախումբը կը կատարէր Զուհաճեանի այլ ստեղծագործութիւն մը [19]:

Բ.- ի նուագագրութիւնը՝ եթէ երբեւիցէ գոյութիւն ունեցած է, մեզի չէ հասած: Ուրեմն, ունինք Ա.- ին ձեռագիր նուագագրութիւնը եւ Բ.-ին երգի ու դաշնակի տպագրութիւնը:

Կառուցուածքը անփոփոխ է երկու տարբերակներուն մէջ՝ նախաբան +A+B+A+C+ վերջաբան, միայն այն տարբերութեամբ՝ որ Ա.- ին մէջ C-ն կը կրկնուի երկու անգամ, որ աւելորդ երկարաձգում մըն է: Երգչային մեղեդին՝ բացի փոքր սրբագրութիւններէ, միանման է երկու տարբերակներուն մէջ: Հիմնական տարբերութիւնը կը կայանայ նուագակցութեան մէջ, որուն Բ. տարբերակը աւելի այլազան, բազմատարր, ազատ ու շարժուն է: Վերջինիս գործիքային նախաբանը ընդլայնուած է (աւելցուած է չորս հատած), առիթ ընծայելով չեշտելու երաժշտութեան յուզատրոփ էութիւնը: Առաջին նախադասութիւնն ունի բարձրահունչ աւարտ (հատածներ 4-5), ի դէմս Ա.- ի կուռ դաշնեակներուն, մինչ երկրորդ նախադասութիւնը կը սկսի մեղմահոս, ձայնակապուած մեղեդիով, զուգակցուած մերձաւոր հնչամասի մէջ ընթացող նուագակցութեամբ (հատածներ 6-7), որոնք կու գան փոխարինել Ա. ի կտրատուած մեղեդիին եւ երկու ձեռքերուն հեռաւոր հնչամասերուն: Այս փոփոխութիւնները նախադասութիւններուն շնորհած են հակադիր բնոյթ եւ նրբազգաց հաղորդականութիւն: Մինչդեռ Ա.- ի նախաբանը կ'աւարտի կանգ առնելով $D_7$-ի ձգուն դաշնեակին վրայ, Բ.-ը՝ շնորհիւ տոմինանթի հնչիւնին վրայ երկարող թրեմոլոյին, կ'ապահովէ անմիջական անցում դէպի A-ն:

Ընդհանրապէս, Ա.-ին մէջ կը տիրապետեն լիարժէք, ծանրաքայլ դաշնեակներ՝ որոնք ստեղծագործութիւնը շղարշած են ներհուն խորհրդաւորութեամբ եւ անոր պարգեւած երգեհոնային հնչողութիւն: Բ.-ին մէջ, նոյն դաշնեակները՝ շնորհիւ խիտ հնչիւնաբաշխումի թօթափումին, կշռութային կոտորակումներուն եւ կենսունակ սթաքաթոներուն, դարձած են աւելի պարզ ու ընթացիկ, մեղմացնելով խորհրդաւորութիւնը եւ երաժշտութիւնը համալրելով կենցաղային տարրերով:

Դաշնակումներուն մէջ եւս կը նշմարուին մանր յղկումներ: Բ.-ի հատած 26-ի վերջին ութերորդականին մէջ, վեցերորդ աստիճանը հանդէս եկած է հարմոնիք (ցած) դիրքաւորումով՝ ռէ պեմոլ, մեղեդիին հետ կազմելով մեծացած քառեակ: Ա.-ի հատած 22-ին մէջ, մեծացած քառեակին փոխարէն կրկնակի տոմինանթ դաշնեակն է՝ ուր ռէն գրուած է իր բնական վիճակով: Բ.-ի ռէ պեմոլը ունի երկու միտում. նախ՝ ան արձագանգն է երեք հատած առաջ գործածուած եւ լսողութեան մէջ տակաւին թարմ մնացած նափոլիթէն դաշնեակի հիմնաձայնին, երկրորդ՝ ան սրելով իր ձգողականութիւնը դէպի տոմինանթի հնչիւնը (սօ), կը փոխարինէ դէպի $K_{64}$ եւ հիմնական ձայնակայքը զարտուղեցնող կրկնակի տոմինանթին՝ որ կարեւոր դեր ունի Ա.-ին մէջ (հմմտ., Ա.՝ հատածներ 22-23 եւ Բ.՝ հատածներ 26-27): Ի դէպ, Բ.-ին մէջ կրկնութեան ժամանակ կը բացակայի պեմոլը (հատած 64): Տպագրական վրիպա՞կ մըն է արդեօք:

Ա.-ի հատած 33-ի վերջին քառորդի $DVII_7$ դաշնեակը՝ որ հնչերանգային թարմութիւն

մըն է B-ի առաջին պարբերութեան ընդհանուր բնուղիղութեան մէջ, կը բացակայի Բ.-ին մէջ (հատած 37)։ Վերջինիս մէջ, սակայն, ան հաւասարակշռուած է հատած 38-ի երկրորդ քառորդի օժանդակ փոքրացած եօթնեակ դաշնեակով։

Ա.-ի ձայնառական թրեմոլոները (հատածներ 35-36) Բ.ին մէջ ընդմիջուած են փոքրալար սուպտոմինանթի դաշնեակով (հատած 40)։

Ա.-ի հատած 74-ի օժանդակ $IV^{h}$-ը Բ.-ի հատած 78-ին մէջ փոխարինուած է օժանդակ $II_{6}^{-5}$-ով, որ արդիւնքն է ոչ այնքան դաշնակումի, որքան ընդհանուր մտայղացումի փոփոխութեան մը համոզումին։ Ա.-ի դաշնեակային նպատակադրուած հիւսուածքը, իրօք, կ'ենթադրէ սուպտոմինանթի ոլորտի առաւել կայուն դաշնեակի օգտագործումը։ Բ.-ին մէջ՝ շնորհիւ նախորդ հատածներու կշռութային պատկերի շարունակութեան, կը յաղթահարուի Ա.-ին երաժըշտական երկու դասոյթներուն (Ora pro nobis եւ peccatoribus) միջեւ եղած ստորաբաժանումը, առիթ տալով մեղեդիին հատած 78-ին մէջ կիսաձայն ցած անցնելով կանխանշել դաշնակումային փոփոխումը՝ մեղմացնելով յաջորդող դաշնեակի դերին գերակայութիւնը։ Միաժամանակ, դաշնակի աջ ձեռքի առաջին դաշնեակի ձայնանիշերուն դասաւորութենէն ելլելով եւ նկատի ունենալով պարզեցուած հիւսուածքը, բաւարար է ռէն կիսաձայն մը ցած փոխադրելով առաջացնել փոքրացած դաշնեակ՝ համոզիչ կերպով իրականացնելու համար վերադարձը դէպի ֆա մեծալար (հատած 79)։ Արդ, Բ.-ին մէջ դաշնակումի այս մանր՝ բայց էապէս գիտակցուած, փոփոխութիւնը միջանկեալ կարեւոր օղակ մըն է ապահովելու շարժումի շարունակողականութիւն։

Իբր հետեւանք վերոյիշեալ վերախմբագրութիւններուն՝ փոփոխութիւն կրած է «Աւէ Մարիա»-յի ընթացքը, նախաբանը Andantino-էն վերածուելով Moderato-ի եւ բուն ստեղծագործութիւնը Maestoso e religioso-էն՝ Andante religioso-ի։ Այսինքն, տեղի ունեցած է ընթացքի ընդհանուր արագացում, որ համահնչիւն է երաժշտութեան մէջ նորամուտ կերպարային ոլորտներուն։

Ուրեմն, հիւսուածքի, կշռոյթի, դաշնակումի, ընթացքի եւ այլ վերափոխութիւններուն շնորհիւ, Բ.-ը համեմատաբար աւելի կենսունակ է, սլացիկ եւ յղկուած։

Բ.-ին ունեցած ոճական այս առաւելութիւնները՝ Ա.-ին նկատմամբ, կը փոխհատուցէ փաստագրական աղբիւրներու թերին՝ ճշտելու Ա. եւ Բ. տարբերակները եւ հաստատելու մեր վերոյիշեալ եզրահանումը։

«Աւէ Մարիա»-ն Զուհաճեանի լաւագոյն հեղինակութիւններէն մէկը պէտք է համարել։ Երգչային մեղմասահ, զգայուն, բիւրեղեայ մեղեդի մը, կառուցուածքային ամբողջականութիւն, կշռութային եւ ելեւէջային ընդհանրութիւններ տարբեր մասերուն մէջ՝ որոնք ստեղծագործութիւնը կը միաւորեն մէկ ամբողջական հովանիի տակ, Զուհաճեանին նախասիրած դաշնակումներ՝ հարմոնիք սուպտոմինանթ, նափոլիթէն, փոքրացած եւ այլ դաշնեակներ, ձայնակայքային ազդեցիկ անցումներ՝ ինչպէս, B-ին սկիզբը (Բ.՝ հատած 27) հակադրային անցումը դէպի համանուն փոքրալարը, ապա զարտուղութիւնը դէպի վերջինիս զուգահեռ մեծալարը՝ լա պեմոլ (Բ.՝ հատածներ 35-38), որոնք կը յանգեցնեն տօ մեծալարի հաստատումին (Բ.՝ հատածներ 39-50), իբրեւ տոմինանթային ոլորտ հիմնական ֆա մեծալար ձայնակայքին. ահա «Աւէ Մարիա»-ն բնորոշող քանի մը յատկանիշ։

Նրբաքանդակ, խորայոյզ երկ մըն է ան, որ անիրաւացիօրէն մատնուած է մոռացութեան։

Կատարումի համար՝ եթէ նուագախումբով է, բնականաբար պիտի մեկնաբանուի Ա. տարբերակը, եթէ դաշնակով է՝ Բ.-ը։ Սակայն կարելի է նաեւ, Զուհաճեանի գրելաոճին ծանօթ երաժշտահան մը՝ օգտուելով Ա. տարբերակի նուագագրութենէն, գործիքաւորէ Բ. տարբերակը, զայն կատարելու նպատակով։

**ՀԱՑԿ ԱԻԱԳԵԱՆ**
**Մարտ 1999**

# ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1.- Տե՛ս Աղբիւրներ եւ ծանօթագրութիւններ գլուխը, էջ 45:

2.- Յարութիւն Սինանեան (1872-1939), պոլսահայ երաժշտահան, նուագավար, ջութակահար, դաշնակահար: Աշակերտը Տ. Չուխաճեանի, որուն դպրոցին հետեւորդը եղաւ իր կեանքի ողջ ընթացքին: Ստեղծագործութիւնները կը յարին վիպապաշտական դպրոցին: Յօրինած է բազմաթիւ մազուրքաներ, փոլքաներ, քատրիյներ, քայլերգներ, էթիւտներ դաշնակի, ջութակի, մանտոլինի, նուագախումբի համար, այլեւ երգեր, խմբերգներ, մշակումներ: Իր երկերէն՝ Մխիթարեաններուն, Հայ Բարեգործական Ընդհանուր Միութեան, Եգիպտոսի Խտիւ Ապպաս Հելմի Բ.-ին նուիրուած քայլերգները, «Ազգային երգեր»-ը, եւայլն, կը բովանդակեն գեղարուեստական բարձրարուեստ արժանիքներ: Իր կեանքն ու գործունէութիւնը՝ ինչպէս սփիւռքահայ երաժիշտներուն ջախջախիչ մեծամասնութիւնը, տակաւին կը սպասէ գիտական ուսումնասիրութեան ու գնահատանքի: Յ. Սինանեանի մասին ընդհանուր տեղեկութիւններու համար տե՛ս Հ. Ներսէս Տիրացուեան, Յարութիւն Սինանեան, «Բազմավէպ», ամսագիր, Վենետիկ, 1904, Փետրուար, թիւ 2, էջ 72-77: Ցիցիլիա Բրուտեան, Սփիւռքի հայ երաժիշտները, Երեւան, 1968, էջ 549-554: Մաթէոս Մուրադեան, Հայ երաժըշտութիւնը XIX դարում եւ XX դարասկզբում, Երեւան, 1970, էջ 278-280: Անահիտ Ցիցիկեան, Հայկական աղեղնային արուեստը, Երեւան, 1977, էջ 75-85: Ցիցիլիա Բրուտեան, Հայ երաժշտական մշակոյթի աշխարհասփիւռ ընձիւղները, Երեւան, 1996, էջ 36, 181-182:

3.- Տե՛ս Հ. Ներսէս Տիրացուեան, նշ. յօդ.ը, էջ 74:

4.- Տե՛ս Նուպար Յ. Ալիքսանեան, Տիգրան Չուխաճեան, իր կեանքն ու արուեստը, Թէոդիկ, «Ամէնուն տարեցոյցը», Վենետիկ, 1926, էջ 459:

5.- Հալա Էլ Շապուրի, եգիպտացի երիտասարդ մեծծօ-սոփրանօ: Երաժշտական կրթութիւնը ստացած է Գահիրէի մանկավարժական հիմնարկին, Գահիրէի Օփերային ձայնամարզութեան դասարանին եւ Գահիրէի պետական երաժշտանոցին մէջ (փրոֆ. Վիոլէթ Մաքքարի դասարան): Գլխաւոր դերերգերով մասնակցած է Գահիրէի Օփերայի ներկայացումներուն, որուն մշտական խումբին անդամ ընդունուած է 1997 թուականին:

6.- Տե՛ս Ա[ւետիս Մովսէսեան], Երաժշտական յաջող երեկոյթ մը, «Ջահակիր», շաբաթաթերթ, Գահիրէ, 14 Յուլիս 1994, թիւ 1292, էջ 1: Յ[ովհաննէս] Տ[էր] Պ[ետրոսեան], Տիգրան Չուխաճեանի օտար լեզուներով յօրինումներու նուիրուած երաժշտական երեկոյթը, «Արեւ», օրաթերթ, Գահիրէ, 22 Յուլիս 1994, թիւ 22551, էջ 2 եւ 4:

7.- Տե՛ս Հ. Աւագեան, Չուխաճեանի «Աւէ Մարիա»-ն կը հնչէ Գահիրէի Օփերային մէջ, «Ջահակիր», շաբաթաթերթ, Գահիրէ, 15 Յունուար 1998, թիւ 1372, էջ 2:

8.- Մայա Կվինէրիա, վրացի դաշնակահարուհի, նուագակցող, որ իբր հրաւիրեալ մասնագէտ կը պաշտօնավարէ Գահիրէի պետական երաժշտանոցին եւ Օփերային մէջ:

9.- Այա Սաքաքիպարա, ուսանած է Ճափոնի յայտնի «Թոհօ Կաքուէն»-ին («Թոքիոյի Երաժշտական Դպրոց») մէջ, դասընթացքներու հետեւած Նիսի Երաժշտանոցին մէջ, 1992-էն սկսեալ կատարելագործուած Փարիզի մէջ Ալէն Մէօնիէի հետ եւ Սիէնի "Académie Chigiana de Musique"-ին մէջ: Մենանուագներով եւ սենակային երաժշտութեան կատարումներով ելոյթներ ունեցած է Ֆրանսայի, Գերմանիոյ եւ Իտալիոյ մէջ:

10.- Մասաքօ Շիմուրա, դաշնակի դասեր սկսած է չորս տարեկանէն, ապա ուսանած է Միւսաշինոյի Երաժշտական Համալսարանին եւ Թոքիոյի Գեղեցիկ Արուեստներու եւ Երաժշտութեան Ազգային Համալսարանին մէջ, որմէ ետք կատարելագործուած ու հաստատուած է Փարիզի մէջ: Շարք մը մրցանակներու դափնեկիր է: Իբրեւ մենակատարուհի եւ սենեկային դաշնակահարուհի ելոյթներ ունեցած է Ճափոնի եւ Եւրոպայի տարբեր քաղաքներու մէջ: Այժմ կը դասաւանդէ Օպըրվիլիէ նահանգի Ազգային Երաժշտանոցին մէջ:

11.- Noël à l'UGAB, "La lettre de l'UGAB, hebdomadaire, Paris, 23 Janvier 1999, no. 254, p. 4: Յօդուածին մէջ կատարողներուն անունները յիշատակուած չեն: Զանոնք՝ իրենց կենսագրականներով հանդերձ, մեզի ուղարկեց ֆրանսահայ դերասան Ժիրայր Բաբազեան:

12.- Լեւոն Համբարձումեան (1885-1970) ծնած է Կ. Պոլիս: Նախնական կրթութիւնը ստացած է տեղւոյն թաղային դպրոցին մէջ եւ ապա Երուսաղէմի Ս. Յակոբ Ժառանգաւորացին մէջ (տե՛ս Գրիգոր Պասմաճեան, Լեւոն Համբարձումեան, «Ջահակիր», շաբաթաթերթ, Գահիրէ, 18 Մարտ 1971, թիւ 372, էջ 3): Պոլիս վերադառնալով եղած է Կեդրոնական Վարժարանի երգեցիկ խումբին լաւագոյն թենորը, եւ 1908 թուականին ձեռնարկած է «Լոյս»-ի էջերուն մէջ ներկայացնել երաժշտական ծանօթ դէմքեր (տե՛ս «Լոյս», Կ. Պոլիս, 5 Յուլիս 1908, թիւ 27, էջ 22): 1909-ին, իր ձայնագրութեամբ լոյս կ՛ընծայէ «Ձայնագրուած հայկական երգեր»-ը (տե՛ս «Ազատամարտ», օրաթերթ, Կ. Պոլիս, 16/29 Յունիս 1909, թիւ 6, էջ 4): 1910-ին կը հաստատուի Աղեքսանդրիա, ուր կը նշանակուի Պօղոսեան Ազգային Վարժարանի երաժշտութեան ուսուցիչ (տե՛ս Գ. Պասմաճեան, նշ. յօդ.ը, էջ 3): Աղեքսանդրիոյ մէջ մեներգներով կը մասնակցի տարբեր գեղարուեստական ձեռնարկներու (տե՛ս Յարգանքի հանդէս Եփրեմի յիշատակին, «Արշալոյս», Գահիրէ, 3 Յուլիս 1912, թիւ 38 էջ 2): 1912-ին Եգիպտոսի մէջ կը հրատարակէ հայկական երգեր՝ «Ձայն տուր ով ծովակ» եւ «Հայաստան» (տե՛ս «Ազատամարտ» , օրաթերթ, Կ. Պոլիս, 12/25 Մայիս 1912, թիւ 894, էջ 3), որոնց մասին կը գրէ հետեւեալը. «Նպատակս է հաւաքել, դաշնաւորել եւ հրատարակել այն բոլոր ազգային ժողովրդական, յեղափոխական եւ այլն երգերը, որոնք բերնէ բերան երգուելով դատապարտուած են այլափոխումի եւ հուսկ յետոյ մոռացութեան» (Լեւոն Համբարձումեան, Կոչ

երաժշտասէր հայ հասարակութեան, «Արշալոյս», Գահիրէ, 3 Յուլիս 1912, թիւ 38, էջ 4)։ 1912 Յուլիս 21-ին, Աղեքսանդրիոյ Իսմիլէրսիթէ Բոըիւէրի սրահին մէջ տեղի կ'ունենայ նուագահանդէս մը՝ խրախուսելու Լ. Համբարձումեանը, որ մասնագիտական կրթութիւն ստանալու համար պիտի մեկնէր Փարիզ (տե՛ս Նուագահանդէս, «Արշալոյս», Գահիրէ, 10 Յուլիս 1912, թիւ 39 էջ 3)։ 1913-ին բնակութիւն կը հաստատէ Փարիզի մէջ, ուր՝ բացի փոքր ընդմիջումներէ, կ'անցնէ իր ողջ կեանքը։ Այնտեղ, Ֆրանսական բանակի հրամանատարութենէն կը ստանայ ատամնաբոյժի վկայական (տե՛ս Գ. Պասմաճեան, նշ. յօդ.ը, էջ 3)։ 1914-ին, Փարիզի մէջ լոյս կ'ընծայէ Չուխաճեանի «Լօռա» («Laura»)ռոմանսը (Ֆրանսերէն) եւ «Աւէ Մարիա»-ն։ 1916-ին կը կազմէ «Փարիզի հայ երաժշտասիրաց խումբ» երգչախումբը։ 1917-ին, Փարիզի մէջ կը սկսի հրատարակել «Վերածնունդ» ամսաթերթը, որ յետագային կը վերածուի շաբաթաթերթի։ 1920-ին կը հրատարակէ «Վերածնունդի տարեցոյցը», 1920-21-ին՝ «Խարազան» երգիծաթերթը, 1927-ին, Պելճիքային մէջ՝ «Լրագիր» պարբերաթերթը, իսկ 1955-էն մինչեւ իր վախճանը, Փարիզի մէջ՝ «Խթան» շաբաթաթերթը (տե՛ս Գ. Պասմաճեան, նշ. յօդ.ը, էջ 3 եւ 5)։ Ունեցած է ազգային-հասարակական գործունէութիւն։ Եղած է նախաձեռնողը մը հայկական երաժշտութեան նկատմամբ։ Ան մեծ վրդովմունք ցուցաբերած է՝ երբ տեղեկացած է, թէ Փարիզի մէջ հրատարակուելիք երաժշտական համայնագիտարանին մէջ՝ հայկական երաժշտութեան մասին անդրադարձում չկայ։ «Ո՞վ պիտի ըլլայ մեր՝ մէջ այն հեղինակաւոր անձնաւորութիւնը, որ պիտի փութայ հայ երաժշտութիւնն ալ ներկայացնելու պատուաւորապէս, այս կարեւոր գործին մէջ», կը գրէ ան (Լեւոն Մ. Համբարձումեան, Ո՞ւր է հայ երաժշտութեան պատմութիւնը, «Ազատամարտ», օրաթերթ, Կ. Պոլիս, 14/27 Յունիս 1913, թիւ 1238, էջ 1)։ Եւ իր այս կարեւոր հարցին ինք պատասխանելով, ուրիշ յօդուածի մը մէջ կը գրէ հետեւեալը. «Արդ, քանի որ Փարիզի երաժշտական շրջանակներուն մէջ տիրող կարծիքը այն է թէ՝ հայ ինքնուրոյն երաժշտութիւն մը գոյութիւն չէ ունեցած, պարտք կ'իյնայ Կոմիտաս վարդապետի եւ միւս հայ մասնագէտ երաժիշտներուն վրայ, որպէս զի հրապարակ գան եւ փաստերով ապացուցանեն թէ հայ երաժշտութիւն մը կա՛յ, եւ թէ ան ալ արժանի է իր տեղը ունենալու երաժշտական ո եւ է համայնագիտարանի մէջ» (Լեւոն Մ. Համբարձումեան, Հայ երաժշտութեան պատմութիւնը, «Ծանք», օրաթերթ, Կ. Պոլիս, 23 Յուլիս/ 5 Օգոստոս 1913, թիւ 7-1267, էջ 1)։ Աւելին. Լ. Համբարձումեան այս գործին համար անձամբ կը դիմէ համայնագիտարանի հրատարակիչ մարմինի տնօրէն՝ երաժշտահան Լաւինեաքին, բայց ժամանակի ուշացումի պատճառաբանութեամբ կը մնայ անհետեւանք (տե՛ս «Ծանք», օրաթերթ, Կ. Պոլիս, 31 Յուլիս/ 13 Օգոստոս 1913, թիւ 14-1274, էջ 1։ Լեւոն Մ. Համբարձումեան, Վերջին կոչ մը՝ երաժշտական համայնագիտարանին առթիւ, «Ծանք», օրաթերթ, Կ. Պոլիս, 31 Օգոստոս/ 13 Սեպտեմբեր 1913, թիւ 41-1301, էջ 1. «Ազատամարտ», օրաթերթ, Կ. Պոլիս, 18 Սեպտեմբեր/ 1 Հոկտեմբեր 1913, թիւ 1316, էջ 1)։ Այնուամենայնիւ, Համբարձումեանի այս փոքրիկ յօդուածները հայկական շրջանակներու մէջ անմիջապէս կ'ունենան դրական թէ բացասական արձագանգները (տե՛ս Սեռովբէ քհնյ. Պուրմաեան, Փարիզի երաժշտական համայնագիտարանը, «Ազատամարտ», օրաթերթ, 26 Յունիս/ 9 Յուլիս 1913, թիւ 1248, էջ 1։ Նոյնի՝ Փարիզի երաժշտական համայնագիտարանը եւ հայ երաժշտութեան պատմութիւնը, «Ծանք», օրաթերթ, Կ. Պոլիս, 31 Յուլիս/ 13 Օգոստոս 1913, թիւ 14-1274, էջ 1։ Յ. Թիրեաքեան, Հայ երաժշտութիւն, «Ծանք», 31 Օգոստոս/ 13 Սեպտեմբեր 1913, թիւ 41-1301, էջ 1։ Սեռովբէ քհնյ. Պուրմաեան, Հայկական երաժշտութիւն, հայ ուրոյն երաժըշտութիւն չկայ, «Ծանք», 6/ 19 Սեպտեմբեր 1913, թիւ 46-1306, էջ 1)։ Համբարձումեանի ջանքերը ի վերջոյ կը պսակուին Կոմիտաս վարդապետի «Հայը ունի ինքնուրոյն երաժշտութիւն» խորագիրը կրող խիստ արժէքաւոր յօդուածին գրութեամբ ու հրապարակութեամբ (տե՛ս «Ազատամարտ», օրաթերթ, Կ. Պոլիս, 18 Սեպտեմբեր/ 1 Հոկտեմբեր 1913, թիւ 1316, էջ 1)։ Կոմիտաս վարդապետ չի մոռնար այս յօդուածին մէջ համակրանքը յայտնելու Համբարձումեանին՝ գրելով. «Պ. Լեւոն Համբարձումեան, նախանձելի զայրոյթով, կը գրէ թէ յանիրաւի անտեսուած է հայ երաժշտութիւնը Համայնագիտարանի էջերում» (անդ, էջ 1)։ Քիչերն են՝ որոնք հրապարակային համակրութեան ու գնահատանքի արժանացած են անմահ Կոմիտաս վարդապետէն։

13.- Մ., Գրախօսական, «Թատրոն եւ երաժշտութիւն», հանդէս, Պաքու, 1914, Մարտ, թիւ 3, էջ 39։

14.- Այս բոլոր աղբիւրներուն մասին մանրամասնօրէն տե՛ս Աղբիւրներ եւ ծանօթագրութիւններ։

15.- Մանրամասնութիւններուն համար տե՛ս Յաւելուած 1, էջ 57։

16.- Այս թուականին մասին մանրամասնօրէն տե՛ս Աղբիւրներ եւ ծանօթագրութիւններ, էջ 43։

17.- Սիրանոյշ (բուն անունը՝ Մերոպէ Գանթարճեան, 1857-1932), հռչակաւոր դերասանուհի եւ երգչուհի։ Միեւնոյն յաջողութեամբ հանդէս եկած է թատերգութիւններու եւ օփերէթներու մէջ։ Ելոյթներ ունեցած է Թուրքիոյ, Կովկասի, Ռուսաստանի, Յունաստանի, Եգիպտոսի բազմաթիւ քաղաքներու մէջ, ամէնուրեք գտնելով բացառիկ ընդունելութիւն։ Ստեղծագործական սերտ յարաբերութիւններ ունէր Չուխաճեանի հետ։ Բազմիցս կատարած է վերջինիս օփերէթներու հերոսուհիներուն դերերգերը (Մերիէմ «Արիֆ», Կիւլ «Քէօսէ Քէհեա», ֆաթիմէ «Լէպլէպէճի Հօր-հոր աղա») եւ մեներգած անոր երգերն ու ռոմանսները։ Չուխաճեան՝ յատուկ Սիրանոյշի համար յօրինած է «Թռչնիկ» ռոմանսը։ Մանրամասնութիւններու համար տե՛ս Շարասան, Թրքահայ բեմն եւ իր գործիչները, Կ. Պոլիս, 1914։ Ռուբէն Զարեան, Սիրանոյշ, Երեւան, 1957։ Գառնիկ Ստեփանեան, Սիրանոյշ, Երեւան, 1958։ Ս. Զատիկեան, Սիրանոյշ, Երեւան, 1961։

18.- Տե՛ս Ներքին լուրեր, «Մշակ», լրագիր, Թիֆլիս, 2 (14) Ապրիլ 1880, թիւ 55, էջ 3։

19.- Տե՛ս Ներքին լուրեր, «Մշակ», լրագիր, Թիֆլիս, 9 (21) Ապրիլ 1880, թիւ 59, էջ 3։

# AVE MARIA

***pour Mezzo - Soprano ou Baryton***
***avec accompagnement d'orchestre***
***[ 1ère version ]***

**D. TCHOUHADJIAN**

**Andantino**

Flauti I.II
Oboi I.II
Clarinetti in Si b I.II
Fagotti I.II
Corni in Fa I.II
III.IV
Cornetti in Si b I.II
Tromboni I.II.III
Bombardone
Tamburo
Cassa
Canto

**Andantino**

Violino I
Violino II
Viola
Violoncello
Contrabasso

# AVE MARIA

*pour Mezzo - Soprano ou Baryton*

*[ 1ère version ]*

**D. TCHOUHADJIAN**

[Partition chant et piano reduite par H. Avakian]

**Andantino**

**Piano**

*p* *sf* *p*

5

*ff* *rall.* *p* *dim.*

**Canto**

**Maestoso [e] religioso**

*p*

10

A - ve Ma - ri - a, gra - ti - a ple - na,

**Maestoso [e] religioso**

*p*

15

Do - mi - nus te - cum, Do - mi - nus te - cum,

# AVE MARIA

***pour Mezzo - Soprano ou Baryton***
***avec accompagnement de Piano***
***[ 2ème version ]***

**D. TCHOUHADJIAN**

***Introduzione***
**Moderato**

**Piano**

*p* *ten.* *ten.* *ten.*

*ff* 5 *pp* *legato* *f* *e*

*pesante* *a tempo* *deciso* 10 *p* *allarg.* 12 12

**Canto**

**Andante religioso**

*p* 15

A - ve Ma - ri - a, gra - ti - a ple - na,

**Andante religioso**

*pp* *legato sempre* 12 12

*a tempo*

A - ve Ma - ri - a, gra - ti - a ple - na

*p* *p dolce*

Do - mi - nus te - cum, Do - mi - nus te - cum,

*f*

Bene - di - cta tu in mu - li - e - ribus

*cresc.* *allarg.* *p* *dim.*

et be - ne - di - ctus fru - ctus ven - tris tu - i, Je - sus.

*cresc.* *allarg.* *p* *dim.*

12 12 12

# AVE MARIA

***pour Violon avec accompagnement de Piano*** (*)

***[ 2ème version ]***

**D. TCHOUHADJIAN**

**Moderato** 12 **Andante religioso**

**Violino**

*allarg.*

*p*

*[a tempo]*

(*) To be played with the piano accompaniment in pages 32-37, H.A.

De jouer avec l`accompagnement de piano des pages 32-37, H.A.

Նուագել էջ 32–37–ի դաշնակի նուագակցութեան հետ, Հ.Ա.

# AVE MARIA

## pour Mezzo-Soprano ou Baryton avec accompagnement d'orchestre
## (1ère version)

## Աղբիւրներ

Երեւանի «Զարենց» Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի (այսուհետեւ՝ ԳԱԹ) Տ. Չուհաճեանի դիւանին (այսուհետեւ՝ ՉԴ) թիւ 27 եւ 28 ձեռագիրները կը բովանդակեն «Աւէ Մարիա»-յի Ա. տարբերակի երկու ամբողջական բնագիրներ, որոնց մասին հարկ է հանգամանօրէն անդրադառնալ:

ա.- Թիւ 27: Խորագիր՝ Ave-Maria: Հեղինակ՝ D. Tchouhadjian: Երաժշտական կազմ՝ նուագագրութիւն: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 7: Գրիչ՝ Տիգրան Չուհաճեան: Գրչատեսակ՝ թանաքագիր: Մեծութիւն՝ 26.x32.5սմ.: Հնգագիծ՝ 16:

Մենակատարին համար յատկացուած է հնգագիծ մը, բայց ոչ մէկ ձայնանիշ գրուած է:

Նուագագրութիւնը կը բովանդակէ հետեւեալ կազմը, զոր կ'ընդօրինակենք Չուհաճեանի ձայնագրած յաջորդականութեամբ.

**Violino I, Violino II, Viola, 2 Flauti, 2 Oboi, 2 Clarinetti Sib, 2 Fagotti, 2 Cornetti Sib, 4 Corni Fa, 3 Tromboni, Bombardone, Violoncello, Contrabasso, Canto, Tamburo, Cassa.**

Oboi I,II-ն գրուած են առաջին եւ երկրորդ տողերուն մէջտեղը գտնուող սոլի բանալիով, անսովոր երեւոյթ մը՝ նոյն ինքն Չուհաճեանի նուագագրութիւններուն համար:

Հարուածային նուագարաններուն յատկացուած է մէկ հնգագիծ, որուն վերեւը գրուած է Tamburo-ն, ներքեւը՝ Cassa-ն:

Նուագարաններուն վերոյիշեալ դասաւորումը ուղեցոյց կը հանդիսանայ որոշելու ձեռագիրին մօտաւոր թուականը:

Ստեղծագործական ուղիի սկզբնական շրջանին, Չուհաճեան նուագախումբի նուագագրութիւններուն մէջ ամենավերը կը գրէր Violini I,II եւ Viola, իսկ ամենավարը՝ Violoncello եւ Contrabasso, ինչպէս ցոյց կու տայ 1860-ական թուականներու վերջաւորութեան մաքրագրած «Արշակ Բ.» օփերայի ձեռագիրը (տե'ս ԳԱԹ, ՉԴ թիւ 3): Ուշ շրջանի երկերուն մէջ, Չուհաճեան բոլոր լարայինները կը գրէր նուագագրութեան վերը, ինչպէս 1880-ական թուականներու վերջաւորութեան յղացած «Զէմիրէ» օփերայի ձեռագիրը (տե'ս ԳԱԹ, ՉԴ թիւ 7): Միջին շրջանի ինքնագիր նուագագրութիւն՝ որուն գրութեան թուականը ստուգուած ըլլայ, չգտանք ԳԱԹ-ին մէջ: Միակ ուղեցոյցը «Քէօսէ Քէհեա» օփերէթի ինքնագիր նուագագրութիւնն է (ԳԱԹ, ՉԴ թիւ 24), որ ստեղծագործութեան Բ. տարբերակն է եւ գրուած պէտք է ըլլայ, մեր կարծիքով, մինչեւ 1870-ականներուն վերջաւորութիւնը[1]: Վերջինին մէջ լարայիններուն տեղաբաշխումը կատարուած է «Զէմիրէ»-ին նման:

Այս բոլորը ի մի բերելով, կը նկատենք, որ լարայիններուն դասաւորութիւնը թիւ 27-ին մէջ՝ մօտ է «Արշակ Բ.»-ին, բայց ոչ միանման, քանի որ առաջինին մէջ երգն ու հարուածայիններն են տեղադրուած ամենավարը, մինչդեռ տարբեր է «Քէօսէ Քէհեա»-յէն եւ «Զէմիրէ»-էն: Հետեւաբար, ան գրուած ըլլալու է նախ քան «Քէօսէ Քէհեա»-յի Բ. տարբերակը, այսինքն՝ մինչեւ 1880 թուականը:

բ.- Թիւ 28: Խորագիր՝ Ave Maria: Հեղինակ՝ [Տիգրան Չուհաճեան]: Երաժշտական կազմ՝ նուագարաններու առանձին նուագամասեր: Թուական՝ անթուակիր: Թերթ՝ 25: Գրիչ՝ անյայտ: Գրչատեսակ՝ թանաքագիր: Մեծութիւն՝ 33x24.5սմ. Հնգագիծ՝ 12 (թերթ 1, 7-8, 25) եւ 10 (թերթ 2-6, 9-24):

Թիւ 27-ի հիման վրայ իրականացուած ընդօրինակութիւն մըն է: Բովանդակութիւնը հետեւեալն է (հերթականութիւնը՝ ըստ ԳԱԹ-ի էջադրութեան).

--------------------

1.- Քննելով ԳԱԹ, ՉԴ-ին մէջ գտնուող «Քէօսէ Քէհեա»-յի ձեռագիրները՝ բոլորն ալ անթուակիր, կարելի եղաւ զատորոշել օփերէթին երկու տարբերակ: Անոնց մասին առայժմ ոչ մէկ տեղեկութիւն յայտնաբերուած է հեղինակին ժամանակակից մամուլին մէջ, որով թուականներու կողմնորոշումին համար հարկ եղաւ դիմել կողմնակի տուեալներու: Ասոնց մասին պիտի անդրադառնանք առանձին աշխատութեամբ մը:

Violino I- էջ 1-1ա, 25
Violino I- էջ 2-2ա
Violino I- էջ 3-3ա
Violino II- էջ 4-4ա
Violino II- էջ 5-5ա
Viola - էջ 6-6ա
Violoncello e [Contra]basso- էջ 7-8
[Contra]basso- էջ 9-9ա
Flauto I- էջ 10-10ա
Flauto II- էջ 11-11ա
Oboe I- էջ 12-12ա
Oboe II- էջ 13
Clarinetto Sib I- էջ 14-14ա
Clarinetto Sib II- էջ 15-15ա
Fagotti I, II- էջ 16-17
Corni Fa, I Coppia- էջ 18-18ա
Corni Fa, II Coppia- էջ 19-19ա
Cornetti Sib I, II- էջ 20-20ա
Tromboni I, II- էջ 21-21ա
Trombone III- էջ 22
Bombardone- էջ 23
Cassa- էջ 24

Oboi I, II-ը գրուած են սովորական երկրորդ գիծի սոլի բանալիով:

*

* *

Տպագրութեան համար առաջնութիւնը տուինք ինքնագիր նուագագրութեան (Թիւ 27), որուն թերիներն ու անհասկնալի կէտերը լրացուցինք Թիւ 28-էն:

Թիւ 27/ 1ա-2-ին մէջ ամբողջութեամբ խազուած ու ջնջուած են՝ հատուածներ 9-20-ը, իսկ սրբագրուած նուագագրութիւնը մեզի չէ հասած: Բարեբախտաբար, Թիւ 28-ին մէջ այս հատուածը յստակօրէն սրբագրուած է: Թիւ 28-ին մէջ, յիշեալ հատուածները նախ գրուած էին Թիւ 27-ի սկզբնական տարբերակին նման: Սրբագրութիւնները կատարուած են հինին վրայ նոր հնգագիծեր կցելով կամ հինը ռետինով ու գծելով ջնջելով կամ հինը խազելով եւ դատարկ հնգագիծերուն վրայ նորը շարադրելով:

Ինչպէս կ'երեւի ձեռագիրներէն, սրբագրուած հատուածն ընդօրինակողը նոյն անյայտ անձն է՝ որ գրած է ամբողջական նուագամասերը: Հետեւաբար, Զուհաճեան սրբագրութիւնները յղացած է Թիւ 28-ի ընդօրինակութենէն ոչ շատ ուշ:

Կան նաեւ այլ, շատ աւելի փոքր հատուածներ՝ ուր Թիւ 27-ին վրայ կատարուած են սրբագրութիւններ Թիւ 28-ի ընդօրինակութենէն ետք եւ ապա վերաշարադրուած Թիւ 28-ին մէջ:

Քանի մը տեղ, սակայն, Թիւ 27-ի սրբագրութիւնները արտացոլուած չեն Թիւ 28-ին մէջ (տե՛ս մեր ծանօթագրութիւնները՝ հատուածներ 21-23, Tromboni I, II, Bombardone (էջ 48) եւ հատուած 8, Cassa (էջ 46), որոնց մասին դժուար է կարծիք արտայայտել:

Թիւ 28-ին մէջ չկայ Tamburo-ի նուագամասը: Բացի հատուածներ 4 եւ 39-42-էն, Թիւ 27-ի Tamburo-ի ամբողջ նուագամասը Թիւ 28-ին մէջ կը նուագէ Cassa-ն (տե՛ս Tamburo-Cassa-ին մեր ծանօթագրութիւնները՝ հատուածներ 21-22 (էջ 48), 25-26 (էջ 48), 83-85 (էջ 51), 89-93 (էջ 51), որով խստօրէն կը սահմանափակուի Tamburo-ին դերը եւ իր գոյութիւնը կը դառնայ աննպատակ: Հաւանաբար, Թիւ 28-ին համար Զուհաճեան ջնջած է զայն: Սակայն, արդեօ՞ք այս ջնջումը արդիւնքն է գեղարուեստական նոր մտայղացումի մը, թէ՝ պարզապէս կատարումի ժամանակ նուագարանին կամ նուագողին բացակայութեան: Իսկ ինչո՞ւ յատկապէս հատուածներ 4 եւ 39-42-ը մնացած են անձեռնմխելի: Հատուած 4-ը հասկնալի է՝ քանի որ երկու հարուածայիններն ալ կը նուագեն միաժամանակ: Մինչ հատուածներ 39-42-ը դժուար է պատճառաբանել. մոռացո՞ւմ, ընդօրինակողին կողմէ վրիպո՞ւմ, թէ հեղինակին կողմէ դիտաւորեալ զանցառում:

Այնուամենայնիւ, տրամաբանական չէ՝ որ այս նուագամասը կորսուած ըլլայ Թիւ 28-ի ծրարէն, քանի որ միւս բոլոր նուագարանները լրիւ հասած են: Տպագրութեան համար յարմար դատեցինք պահել Tamburino-ն:

Թիւ 28-ը կարեւոր օժանդակութիւն մատուցանեց Tromboni I, II, III-ին համար: Նուագագրութեան մէջ (Թիւ 27) անոնք գրուած են մէկ հնգագիծի վրայ: Երբ հիւսուածքը եռաձայն է, դիւրութեամբ կարելի է իւրաքանչիւր ձայն յաջորդաբար բաշխել երեք նուագարաններուն: Երբ հիւսուածքը երկձայն կամ միաձայն է, չէ յստակացուած իւրաքանչիւր գիծին պատկանելիութիւնը, որ կարելի եղաւ լուծել միայն դիմելով Թիւ 28-ին:

Երգչային ձայնամասը՝ որ չկայ Թէ 27-ին եւ Թէ 28-ին մէջ, վերականգնեցինք Լեւոն Համբարձումեանի տպագրածին հետեւողութեամբ: Քանի մը հատած՝ ուր նուագակցութեան փոփոխութեան հետեւանքով անհնար էր նոյնութեամբ ընդօրինակել Համբարձում-

եանին տպագրածը, դիմեցինք մեղեդիական գիծը կրկնապատկող նուագարանի մը օգնութեան (տե՛ս ծանօթագրութիւնները՝ հատածներ 34 (էջ 49), 74 (էջ 50), 77-80 (էջ 50):

**Oboi I, II**՝ թիւ 28-ին նման, վերածեցինք այժմ ընդունուած երկրորդ գիծի սոլի բանալիին:

Վերադասաւորեցինք նուագագրութեան նուագարաններուն յաջորդականութիւնը՝ ըստ ժամանակակից ընդունուած կերպին:

Լուսաբանութեան կարօտ մանրամասնութիւններուն մասին բացատրութիւններ կը գտնենք Ծանօթագրութիւններուն մէջ:

Ի վերջոյ, թիւ 28-ի գոյութիւնը՝ իր սրբագրուած ու վերանայուած բաժիններով, կու գայ ապացուցանելու՝ թէ «Աւէ Մարիա»-յի Ա. տարբերակը կատարուած է հեղինակի կենդանութեան ժամանակ: Երգիչի առանձին նուագամաս մը կամ դաշնակի փոխադրութիւն մը՝ որոնք մեզի չեն հասած, հաւանաբար մնացած են մենակատարին մօտ: Իսկ թիւ 27-ին մէջ երգիչի դերամասին բացակայութիւնը կը վկայէ՝ որ նուագավարին ծանօթ եղած է մեներգային գիծը: Իսկ ո՞վ աւելի ծանօթ կրնայ ըլլալ երաժշտութեան, քան հեղինակը՝ Տ. Չուհաճեան:

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

, **Հատած 2. Oboe I.**

Թիւ 27/ 1.- Երկրորդ ութերորդականէն սկսած ներքընթաց չարժումը գրուած է տօ-սի պեմոլ-լա-տօ: Սակայն հատածներ 1 եւ 3-ի բոլոր նուագարաններուն ութերորդական չարժումները կ'ընթանան մաքուր ութեակներով, որ կասկած կը յառաջացնէ հատած 2-ին մէջ երրեակ ձայնամիջոցին առկայութեան: Երրեակը կը բացակայի Փարիզի տպագրութեան մէջ եւս: Յիշենք, որ թիւ 27-ին մէջ Oboi-ը գրուած է առաջին եւ երկրորդ գիծերու մէջտեղի սոլի բանալիով, որուն յաջորդող հնգագիծը յատկացուած է Clarinetti Sib-ին: Հաւանաբար, մաքրագրութեան ընթացքին տեսողական վրիպակ մը եղած ըլլայ:

Թիւ 28/ 12.- Յիշեալ ութերորդականներուն առաջին ձայնանիշը նախ նշանակուած է տօ, որ սակայն նախքան չարունակուիլը ջնջուած է ու փոխարէնը գրուած լա-սոլ-ֆա-տօ:

Կը կարծենք, որ թիւ 27-ը ձեռագրական վրիպակ մըն է:

**Հատած 4. Violino I.**

Թիւ 27/ 1.- Կշռոյթը մէկ ութերորդական աւելի է՝



Թիւ 28/ 1ա, 2,3.- Կշռոյթն այսպէս է՝



Սակայն **Flauti I, II** եւ **Oboe I**՝ որոնց կշռոյթը տրամաբանօրէն պէտք է համապատասխանէ Violino I-ին, թէ՛ 27-ին եւ թէ՛ 28-ին մէջ ունին հետեւեալ կշռոյթը.



Նախընտրեցինք **Violino I**-ն նմանցնել **Flauti-Oboi**-ին:

**Հատած 5. Flauti I, II.**

Թիւ 27/ 1.- Տօ-սին ձայնակապուած չեն, մինչդեռ հատածներ 4-6-ին բոլոր նմանատիպ ենթադասոյթները ձայնակապուած են:

Թիւ 28/ 10,11.- Տօ-սին ձայնակապուած են:

Թիւ 27-ի բացթողումը մոռացում մըն է:

**Հատած 6. Oboe I.**

Թիւ 27/ 1.- Մոռցուած է սի-լային ձայնակապը:

**Հատած 6. Fagotti I, II. Contrabasso.**

Թիւ 27/ 1.- Վերջին քառորդի միին պեմոլները մոռցուած են:

Թիւ 28/ 7ա, 9, 16.- Նախորդին հետեւանքով այստեղ եւս կը բացակային պեմոլները:

**Հատած 8. Flauti I, II.**

Թիւ 27/ 1ա.- Հատածին երկրորդ կէսը գրուած է այսպէս.



Տասնվեցերորդական ձայնանիշերը կը վերաբերին՝ **Flauto I**-ի՞ն, **II**-ի՞ն, թէ երկուքին:

Թիւ 28/ 10, 11.- Նոյնը գրուած է այսպէս.



Պահպանեցինք թիւ 27-ը, Flauto I-ին աւելցնելով ձայնահատ մը:

**Հատուած** 8. Cassa.

Թիւ 28/ 24-ին մէջ ան նախապէս եղած է ճիշտ թիւ 27/ 1ա-ին նման: Այնուհետեւ, ռետինով ջնջուած է ու ամբողջ հատուածը վերածուած ձայնահատի:

**Հատուած** 8. Violoncello.

Թիւ 27/ 1ա.- Չորրորդ քառորդի տօն գրուած է իբրեւ մէջտեղի տօ:

Թիւ 28/ 7ա.- Այս հատուածը ձայնագրուած չէ, այլ կը կրէ Contrabasso-ին նմանողութեամբ նուագելու կրճատումի նշաններ, որով տօն՝ թիւ 27-ին համեմատութեամբ, կը նուագուի ութեակ ցած:

**Հատուածներ** 8–9.

Թիւ 27/1ա.- Հատուած 8-ը կը կրէ p dim.: Հատուած 9-ին մէջ՝ որ խաղուած բնագիրին սկիզբն է, երանգանիշ չկայ: Բայց նախորդ հատուածի p dim.-ն կը յուշէ, թէ հատուած 9-ը ըլլալու է աւելի մեղմ՝ հաւանաբար pp:

Թիւ 28.- Թիւ 27-ի հատուած 8-ի dim.-ն թիւ 28-ին մէջ արտացոլուած է լոկ Violino I-ի երկու բնագիրներուն մէջ (էջ 2 եւ 3): Միւս բոլոր նուագարանները չորրորդ քառորդին վրայ կը կրեն միայն p: Հատուած 9-ը երանգանիշ չունի, որով կը հասկցուի թէ կը շարունակուի նախորդ հատուածի p-ն: Բացառութիւն է Violino I-ի բնագիրներէն մէկը՝ ուր նշուած է pp (էջ 2), եւ Violino I-ի միւս երկու բնագիրները (էջ 3 եւ 5) ու Viola-ն (էջ 6), ուր ուղղակիօրէն գրուած է p:

Տպագրութեան համար միաձուլեցինք թիւ 27-ի եւ 28-ի երանգանիշերը:

**Հատուածներ** 9–20.

Ինչպէս նշեցինք, թիւ 27-ին այս հատուածները խաղուած են եւ նոր տարբերակը իրականացուած թիւ 28-ին մէջ: Այնուամենայնիւ, թիւ 27-ի նախնական գրութիւնը երբեմն օգտակար եղաւ ճշտելու թիւ 28-ին մէջ հանդիպող անորոշութիւններ:

**Հատուած** 11. Contrabasso.

Թիւ 27/ 1ա եւ թիւ 28/ 7ա.- Գրուած է այսպէս.



Թիւ 28/ 9.- Գրուած է այսպէս.



**Հատուած** 13. Violino II.

Թիւ 28/ 4.- Նշուած է p:

Թիւ 28/ 5.- Երանգանիշ չկայ:

**Հատուած** 13. Violoncello.

Թիւ 28/ 7ա.- Հատուածին սկիզբը գրուած է pizz., իսկ arco-ն մոռցուած է: Վերջինս դրուելու է նոյն հատուածի կէսին կամ հատուած 14-ի սկիզբը: Նկատի ունենալով, որ թիւ 27/ 1ա-ի հատուած 13-ի երկրորդ կէսին մէջ ընթեռնելի են սթաքաթոյի նշաններու հետքեր, պայմանականօրէն arco-ն դրինք հատուած 14-ի սկիզբը:

**Հատուածներ** 13–15.

Ինչպէս կ'երեւի ստորեւ բերուած ցուցակէն՝ ձայնակապումը եւ ձայնանիշերուն տեւողութիւնները միատարր չեն.

Անշուշտ, այս բոլորը կարիք ունի խմբագրութեան:

**Հատած 17.** Corno II.

Թիւ 28/ 18.- Կայ կրկնակի գրութիւն: Մէկ կողմէ ամբողջ հատածին համար նշանակուած է ձայնահատ, միւս կողմէ գրուած է ամբողջ տեւողութեամբ սոլ պեմոլ (բուն հնչողութեամբ՝ տօ պեմոլ): Վերջինս ընդհանուր դաշնակումին չի համապատասխաներ եւ ակընյայտ սխալ մըն է ընդօրինակողին կողմէ:

**Հատած 18.**

Թիւ 28.- Ոչ մէկ երանգանիշ կը կրէ, բացի Clarinetto II-էն (էջ 15)՝ ուր նշանակուած է ff : Միւս բոլոր նուագարանները բնականաբար կը շարունակեն նախկին երանգանիշը՝ p: Ցիչենք, որ հատած 18-ը կը գտնուի ջնջուած ու վերաշարադրուած հատուածին մէջ: Clarinetto II-ի ff-ն սկզբնագրութենէն մնացած ու մոռցուած հետք մըն է, մանաւանդ երբ նկատի ունենանք՝ որ թիւ 27/ 2-ին այս հատածը կը կրէ ff:

**Հատածներ 18-19.** Corno II.

Թիւ 28/18.- Վերադիր սրբագրութեան պատճառով դժուար է զայն վերծանել: Դիմեցինք թիւ 27/ 2-ին, ուր յստակօրէն ընթեռնելի են անոր հետքերը եւ որ լիովին կը պատշաճի երաժշտութեան նոր շարադրանքին:

**Հատածներ 18-19.** Violino II.

Կայ ձայնակապի անհամաձայնութիւն, ինչպէս կ'երեւի հետեւեալ օրինակներէն.

Թիւ 28/ 4.-




Թիւ 28/ 5.-




**Հատածներ 18-19.** Contrabasso.

Կայ հնչամասի տարբերութիւն.

Թիւ 27/ 2 եւ թիւ 28/ 7ա.-




Թիւ 28/ 9.-




**Հատած 19.** Violoncello.

Թիւ 28/ 7ա.- Առաջին քառորդ ձայնանիշը գրուած է սոլ պեմոլ, որ ընդօրինակութեան սխալ մը ըլլալով զայն փոխարինեցինք լա պեմոլով:

**Հատածներ 21-22.** Tromboni I, II.

Թիւ 27/ 2ա.- Հատած 21-ի երկրորդ կէսը եւ 22-ի առաջին քառորդին սկզբնագրութիւնը Չուհաճեան ռետինով ջնջած ու սրբագրած է:

Թիւ 28/ 21.- Թիւ 27/ 2ա-ին սրբագրութիւնը արտացոլուած չէ այստեղ: Ան կը կրէ հին տարբերակը՝ որ ճիշտ նման է Fagotto I-ին եւ Violoncello-ին:

Տպագրեցինք թիւ 27/ 2ա- ի սրբագրըւածը:

**Հատածներ 21-23.** Bombardone.

Թիւ 27/ 2ա.- Գրուած նախադասութիւնը ամբողջութեամբ խազուած է եւ փոխարէնը դրուած ձայնահատեր:

Թիւ 28/ 23.- Թիւ 27/ 2ա-ին սրբագրութիւնը այստեղ եւս չէ արտացոլուած: Ան կը շարունակէ սկզբնական տարբերակը՝ որ նման է Fagotto II-ին:

**Հատածներ 21-22.** Tamburo, Cassa.

Թիւ 27/ 2ա.- Թրիլ կրող ձայնանիշը գրուած է Tamburo-ին համար՝ ինչպէս այս տպագրուածը:

Թիւ 28/ 24.- Նոյն ձայնանիշը տրուած է Cassa-ին: Tamburo ընդհանրապէս չկայ:

**Հատած 23.** Oboe II.

Թիւ 28/ 13.- Տօն գրուած է մէկ ութեակ ցած:

**Հատած 24.** Oboe II.

Թիւ 27/ 2ա.- Տօները ձայնակապուած չեն իրարու:

Թիւ 28/ 13.- Ձայնակապուած են:

Հետեւելով Violino II-ին, նախընտրեցինք թիւ 28/13-ը:

**Հատած 24.** Clarinetto II.

Նախորդին նման, թիւ 27/ 2ա-ին մէջ տօսին ձայնակապուած չեն, մինչդեռ 28/ 15-ին մէջ ձայնակապուած են:

**Հատածներ 25-26.** Tamburo, Cassa.

Նոյնը՝ ինչ հատածներ 21-22-ի ծանօթագրութիւնը:

**Հատած 26.** Oboi I, II.

Թիւ 27/ 2ա.- Երկու նուագարաններուն համար յատկացուած է միեւնոյն տօն (ինչպէս մեր տպագրածը), միաժամանակ Oboe II-ին համար նշանակուած ամբողջ տեւողութեամբ ձայնահատ մը: Կամ Oboe II-ին տօն

պէտք է ջնջել եւ կամ՝ ձայնահատը:

Թիւ 28/ 13.- Oboe II-ին տօն գրուած է ութեակ ցած (մէջտեղի տօ):

**Հատուածներ 31-32.** Clarinetti I, II.

Թիւ 27/ 3.- Գրուած է իբրեւ Clarinetto II: Clarinetto I-ն՝ ձայնահատ:

Թիւ 28/ 14,15.- Գրուած է իբրեւ Clarinetto I: Clarinetto II-ն՝ ձայնահատ:

**Հատուած 34.** Canto.

Փարիզի տպագրութեան մէջ մեղեդին այսպէս է.




Անիկա չի յարմարիր թիւ 27/ 3ա-ի տարբերակին, որով ստիպուեցանք զայն փոխել՝ հետեւելով մեղեդին կրկնապատկող նուագարաններուն (Flauti I, II եւ Violino I):

**Հատուածներ 36-38.** Corni.

Կրկնողութեան նշաններու օգտագործումին պատճառով, թիւ 27/ 3ա-ին մէջ ձայնակապումները յստակ չըլլալով, զանոնք ընդօրինակեցինք ըստ թիւ 28/ 18,19-ին:

**Հատուած 41.** Contrabasso.

Կայ հնչամասի անհամաձայնութիւն.

Թիւ 27/ 4 եւ թիւ 28/ 8.-



Թիւ 28/ 9.-



**Հատուածներ 41-42.** Tromboni I, II, III.

Թիւ 27/ 4.- Գրութիւնը երկձայն է, Ա. ձայնը՝ տօ-սի-տօ, Բ.-ը՝ սոլ-սոլ-սոլ: Հասկընալի է՝ որ առաջինը կը վերաբերի Trombone I-ին, երկրորդը՝ Trombone III-ին: Իսկ ո՞ր գիծը կը նուագէ Trombone II-ն:

Թիւ 28/ 21,22.- Trombone I-ն կը նուագէ վերի տօ-սի-տօն, Trombone II-ն՝ սոլերը, իսկ Trombone III-ին համար աւելցուած է երրորդ ձայն մը՝ մի-ռէ-սոլ, որ կը բացակայի թիւ 27/ 4-ին մէջ:

Հետեւեցանք թիւ 28-ին:

**Հատուածներ 42-45.** Violini I, II, Viola.

Թիւ 27/ 4.- Իջնող հնգեակներուն ձայնակապումը միշտ չէ՝ որ նշանակուած է: Սակայն նկատի ունենալով՝ որ մեծամասնութիւնը ձայնակապուած է, յարմար դատեցինք միաւորել բոլորը:

Թիւ 28/ 1ա, 2, 3, 4ա, 5ա, 6ա.- Ձայնակապումի տեսանկիւնէն կը ներկայացնեն խառնաշփոթ վիճակ մը:

**Հատուածներ 45-46.** Oboe II.

Թիւ 28/ 13.- Երեք տօերն ալ գրուած են ութեակ ցած:

**Հատուածներ 48 եւ 50.** Flauto I.

Արբէժները թիւ 28/ 10ա-ին մէջ խազուած են ու փոխարինուած ձայնահատով, մինչդեռ պահպանուած են թիւ 27/ 4ա-ին մէջ: Ի դէպ, անոնք գոյութիւն ունին նաեւ Փարիզի տպագրութեան մէջ:

**Հատուած 62.** Violino II, Viola.

Թիւ 27/ 2ա-ի եւ 28/ 4, 5, 6ա-ի սկզբնագրութեան եւ խազուած մասերուն հետքերէն կարելի եղաւ վերականգնել հատուածներ 23-24-ի նախնական վիճակը՝ նախ քան սրբագրուիլը, որ՝ ինչպէս պիտի անդրադառնանք ստորեւ, օգնեց հատուած 62-ին հետ կապուած հարցի մը պարզաբանումին: Ահաւասիկ հատուածներ 23-24-ի սկզբնական տարբերակը.




Անիկա թէ՛ թիւ 27/ 2ա-ին եւ թէ՛ թիւ 28/ 4, 5, 6ա-ին մէջ սրբագրուած է այսպէս.




Հատուածներ 47-61-ը նոյնութեամբ կը կրկնեն հատուածներ 9-23-ի երաժշտութիւնը: Թիւ 27/ 4ա-5-ի հատուածներ 47-61-ը ձայնագրուած չեն, այլ նշանակուած են տառերով՝ իբրեւ կրկնութիւն հատուածներ 9-23-ին վրայ համապատասխանօրէն նշանակուած տառերուն: Վերաձայնագրութիւնը կը սկսի հատուած 62-էն, որ կը համապատասխանէ հատուած 24-ին: Թիւ 27/ 5-ին մէջ, սակայն, հատուած 62-ը պահպանած է հատուած 24-ին սկզբնագրու-

թիւնը: Զուհաճեան մոռցա՞ծ է արդեօք սրբագրել զայն, թէ գիտակցաբար պահպանած է: Իսկ Թիւ 28/4ա, 5ա, 6ա-ին մէջ Violino II-ն գրուած է Թիւ 27/ 5-ի հատուած 62-ին նման, մինչ Viola-ն գրուած է ըստ Թիւ 27/ 2ա-ի հատուած 24-ի սրբագրուած տարբերակին, ինչպէս ցոյց կու տայ հետեւեալ օրինակը.




Ուրեմն, Թիւ 28/ 4ա, 5ա, 6ա-ի հատուած 62-ին մէջ, Violino II-ն եւ Viola-ն կը նուագեն միեւնոյն ձայնանիշերը՝ սի պեմոլ-լա, որ այնքան ալ բաղձալի չէ: Նախ, Զուհաճեանին բնորոշ չէ նման դաշնակային հիւսուածքներուն մէջ Violino - Viola կրկնապատկումները, եւ երկրորդ՝ այս պատճառով կը տկարանայ կատարեալ յանգաձեւին վերջին հիմնաձայնական դաշնեակին հնչեղութիւնը, քանի որ վերջինիս հնգեակի հնչիւնը կը բացակայի լարայիններուն մօտ եւ կը սահմանափակուի դոկ Oboe II-ով եւ Corno I-ով: Մէկ խօսքով, հատուած 62-ին համար պէտք է ընդունիլ կամ հատուած 24-ի սրբագրուածը՝ երկու նուագարաններն ալ միասին վերցուած, կամ հատուած 62-ը՝ ինչպէս որ կայ Թիւ 27/ 5-ին մէջ: Մենք կանգ առինք վերջինին վրայ:

**Հատուածներ 71-74.** Violino I.

Թիւ 27/ 6- Հատուած 71-ի սոլին վրայ գրուած է divisi, որմէ ետք ոչ մէկ նշում կայ unisono-ի կամ divisi-ի վերացումին: Այնուհետեւ, հատուած 74-ի ռէ պեմոլէն կը սկսի ուրիշ divisi մը:

Թիւ 28/ 25.- divisi կայ միայն հատուած 76-ի մի պեմոլին վրայ:

Թիւ 28/ 2ա, 3ա.- divisi ընդհանրապէս գոյութիւն չունի:

Մէկ կողմ կը թողունք Թիւ 28-ը՝ որ ակնյայտօրէն պակասաւոր է:

Գալով Թիւ 27/ 6-ին, հատուած 74-ի divisi-ն ենթադրել կու տայ՝ թէ նախապէս unisono մը պէտք է գոյութիւն ունեցած ըլլայ: Նկատենք, որ Violino II-ն հատուած 69-էն սկսեալ, առանց divisi-ի կը բովանդակէ վեցեակ, հնգեակ, քառեակ եւ երրեակ հարմոնիք ձայնամիջոցներ, հետեւաբար, տրամաբանական պիտի ըլլար՝ եթէ հատուած 72-ի երկրորդ քառորդէն սկսեալ, երբ ձայնամիջոցը ութեակներէ կը փոխուի երրեակի, քառեակի եւ այլն., Violino I-ն՝ Violino II-ին նման, նուագէ unisono: Այսպէս, նախ՝ հպումի եւ ձայներանգի տեսանկիւնէն Violino I-ն կը միանայ իր նուագակիցին եւ երկրորդ՝ կ'արդարացուի հատուած 74-ի divisi-ն:

**Հատուածներ 72-73.** Bombardone.

Թիւ 28/ 23.- Գրուած է Թիւ 27/ 6-ին (ներկայ տպագրութեան) նկատմամբ մէկ ութեակ ցած:

**Հատուած 74.** Canto.

Փարիզի տպագրութեան մէջ երկրորդ ռէն պեմոլ է, որ համընթաց է դաշնակի նուագակցութեան հետ: Թիւ 27/ 6-ի նուագակցութիւնը կը թելադրէ՝ թէ այստեղ ան պէտք է ըլլայ ռէ պեքար:

**Հատուած 75.** Violoncello.

Թիւ 28/ 8.- Գրուած է Թիւ 27/ 6ա-ին (ներկայ տպագրութեան) նկատմաբ մէկ ութեակ ցած:

**Հատուած 76.** Clarinetti I, II.

Թիւ 27/ 6ա.- Ռէ-սոլ երկհնչիւնները ձայնակապուած չեն:

Թիւ 28/ 14ա, 15ա.- Անոնք ձայնակապուած են:

Թիւ 27-ը ձեռագրական վրիպակ մըն է, քանի որ միւս բոլոր նուագարանները ձայնակապուած են:

**Հատուածներ 77-80.** Canto.

Փարիզի տպագրութիւնը զգալիօրէն տարբերելով Թիւ 27/ 6ա-էն, յստակ չէ մեղեդիին դիրքը Թիւ 27-ին մէջ: Առանց ոչ մէկ փոփոխութեան ենթարկելու, զայն յարմար նկատեցինք տեղադրել հատուածներ 79-80-ին մէջ:

**Հատուածներ 80-81.** Flauti I,II, Oboi I, II, Clarinetti I, II, Cornetti I, II.

Թէեւ բոլորն ալ կը բովանդակեն միեւնոյն ձայնանիշերը, սակայն անոնք խիստ անհամաձայն են երկու հատուածներուն միջեւ եղած ձայնակապումին տեսանկիւնէն.

Fl. I, II. Թիւ 27/ 6ա.- Ձայնկապուած են:

Fl. I. Թիւ 28/ 10ա.- Ձայնակապուած չեն:

Fl. II. Թիւ 28/11ա.- Ձայնակապուած են:

Ob. I, II. Թիւ 27/ 6ա.- Ձայնակապուած չեն:

Ob. I. Թիւ 28/ 12ա.- Ձայնակապուած են:

Ob. II. Թիւ 28/ 13.- Ձայնակապուած չեն:

Cl. I, II. Թիւ 27/ 6ա.- Ձայնակապուած չեն:

Cl. I. Թիւ 28/ 14ա.- Ձայնակապուած չեն:

Cl. II. Թիւ 28/ 15ա.- Ձայնակապուած են:

Crnt. I,II. Թիւ 27/ 6ա.- Ձայնակապուած չեն:

Crnt. I,II. Թիւ 28/ 20ա.- Ձայնակապուած են:

Նախընտրեցինք միաւորել բոլորը ու պահպանել ձայնակապումը:

**Հատած 81.** Cornetti I, II.

Թիւ 27/ 6ա.- Սրբագրութիւններուն պատճառով յստակ չէ:

Օգտուեցանք Թիւ 28/ 20ա-էն:

**Հատածներ 81-82.** Violino I, Viola.

Թիւ 27/ 6ա.- Անհասկնալի պատճառով cresc.-ի նշանները խազուած են:

**Հատածներ 82-83.** Corni I, II, III, IV, Cornetti I, II, Violoncello, Contrabasso.

Թիւ 27/ 6ա-7.- Հատած 82-էն սկիզբ առած է ձայնակապ մը՝ որուն շարունակութիւնը չկայ հատած 83-ին մէջ: Նկատի պէտք է ունենալ, որ հատած 82-ը կը համդիսանայ էջ 6ա-ի վերջին հատածը, ուրեմն, հատած 83-ը կը գտնուի յաջորդ էջին (էջ 7) մէջ:

Թիւ 28/ 18ա, 19ա, 20ա, 8.- Ձայնակապ չկայ:

Վերջինս կը թուի ըլլալ աւելի բնական:

**Հատած 83.**

Թիւ 27/ 7.- Իւրաքանչիւր նուագարանի համար նշանակուած էր ff, որ ամբողջութեամբ խազուած է:

Թիւ 28.- Նուագարաններուն մեծամասնութիւնը պահպանած է ff-ն:

ff-ն բնական արդիւնքն էր հատածներ 81-82-ի cresc.-ին: Առաջինին վերացումով անյայտ կը մնայ ուժեղացումին աստիճանը: Արդեօք ա՞յս է պատճառը՝ որ Չուհաճեան խորհած է ջնջել նախորդ հատածներու cresc.-ն (տե՛ս հատածներ 81-82-ի ծանօթագրութիւնը):

**Հատածներ 83-85.** Tamburo, Cassa.

Թիւ 27/ 7.- Թէեւ հնգագիծի Cassa-ի տողին վրայ ձայնահատ չկայ, բայց նկատի ունենալով՝ որ ձայնանիշերը գրուած են հնգագիծի վերի կողմը, դժուար չէ եզրակացնել՝ թէ անոնք յատկացուած են Tamburo-ին:

Թիւ 28/ 24.- Նոյնը գրուած է Cassa-ին համար:

Ինչպէս հատածներ 21-22 եւ 25-26-ը, նախապատուութիւնը տուինք Թիւ 27-ին:

**Հատածներ 83-85.** Flauti I, II, Oboi I, II, Clarinetti I, II, Fagotti I, II, Corni I, II, III, IV, Cornetti I, II, Violini I, II, Viola, Violoncello, Contrabasso.

Թիւ 27/ 7-ի եւ Թիւ 28-ի ձայնակապումները կը ներկայացնեն խառնաշփոթ վիճակ մը: Միեւնոյն նուագարանը տարբեր բնագիրներուն մէջ, այլեւ նոյն հիւսուածքի տէր տարբեր նուագարանները միեւնոյն բնագիրին մէջ ձայնակապուած են այլազան ձեւերով: Զանոնք միաւորելու հարկադրութեամբ, պատշաճ նկատեցինք ձայնակապել լոկ հատածներ 84-85-ը, որ աւելի մօտ է հեղինակային բնագիրին (Թիւ 27/ 7):

**Հատած 84.**

Թիւ 27/ 7.- Իւրաքանչիւր նուագարանի համար նշանակուած է pp:

Թիւ 28.- Ոչ մէկ նուագարան կը կրէ pp:

Ըստ մեր ենթադրութեան, Թիւ 27/ 7-ին մէջ pp-ն աւելցուած է իբր հետեւանք նախորդ հատածի ff-ի ջնջումին, որոնք կատարուած են Թիւ 28-ի ընդօրինակութենէն ետք, քանի որ անոնցմէ ոչ մէկը արտացոլուած է Թիւ 28-ին մէջ (տե՛ս նաեւ հատած 83-ի ծանօթագրութիւնը):

**Հատածներ 86-87.** Oboe II.

Թիւ 27/ 7.- Մուտք կը գործէ հատած 86-ին (ներկայ տպագրութիւնը):

Թիւ 28/ 13.- Մուտք կը գործէ հատած 87-ի լայէն:

**Հատածներ 89-93.** Tamburo, Cassa.

Թիւ 27/ 7-7ա-ին Tamburo-ին նուագամասը Թիւ 28/ 24-ին մէջ տրուած է Cassa-ին (տե՛ս հատածներ 21-22, 25-26, եւ 83-85-ի ծանօթագրութիւնները):

**Հատածներ 89-93.** Bombardone.

Թիւ 28/ 23.-Նախ գրուած է Թիւ 27/ 7-7ա-ին (ինչպէս ներկայ տպագրութիւնը), յետոյ տողերը խազուած են ու փոխարինուած հնգեակ վարի փայով: Նկատելի է, որ հատած 79-ի երկրորդ կէսէն մինչեւ հատած 85, Թիւ 27/ 6ա-7-ի եւ Թիւ 28/23-ի նուագամասերը՝ որոնք սկզբնապէս նոյնն են եղած, երկու բնագիրներուն մէջ ալ խազուած են ու փոխարինուած ձայնահատերով: Հարց կը ծագի, թէ ինչու հատածներ 89-93-ի Թիւ 28/ 23-ի սրբագրութիւնը չէ արտայայտուած Թիւ 27/ 7-7ա-ին մէջ:

**Հատած 90.** Flauti I, II, Fagotti I, II, Violini I, II, Viola, Violoncello.

Քառորդ ձայնանիշեր կրող այս նուագարաններուն ձայնակապումը հետեւեալ կերպ արտայայտուած է.

Թիւ 27/ 7ա.-

Flauti I, II. Ձայնակապ չեն կրեր:

Fagotti I, II. Ձայնակապը կը սկսի հատածի սկիզբէն եւ կը վերջանայ հատած 91-ի փային վրայ:

Violini I, II. Չորս ձայնանիշերը միակցուած են մէկ ձայնակապով:

Viola. Ձայնակապ չկայ:

Violoncello. Կը կրէ կրկնակի ձայնակապ: Մէկը կ'երկարի հատած 90-ի սկիզբէն մինչեւ 91-ի փան, միւսը կ'ընդգրկէ հատած 90-ի ռէ-տօ-լան:

Թիւ 28.- Ոչ մէկ նուագարան ձայնակապ կը կրէ, բացի Violino II-էն (էջ 4ա եւ 5ա)՝ ուր ռէ-տօ-լան միակցուած են իրարու:

Մեր կարծիքով, ըստ նախադասութեան երաժշտական կառուցուածքին, ձայնակապւելու է ռէ-տօ-լան, ինչպէս թիւ 27/ 7ա-ի Violoncello-ն եւ 28/ 4ա, 5ա-ի Violino II-ն:

**Հատածներ 91-93.**

Հարցը դարձեալ կը վերաբերի ձայնակապումին:

Թիւ 27/ 7ա.- Corni I, II, Bombardone, Violini I, II, Viola, Violoncello. երեք հատածներ ալ ձայնակապուած են իրարու:

Flauti I, II, Oboi I, II, Clarinetti I, II, Fagotti I, II, Corni III, IV, Tromboni I, II, III. միայն հատածներ 91-92-ն են ձայնակապուած:

Contrabasso. միայն հատածներ 92-93-ն են ձայնակապուած:

Cornetti I, II. ոչ մէկ ձայնակապում կը գտնուի:

Թիւ 28.-Բոլոր նուագարաններուն երեք հատածներն ալ ձայնակապուած են:

Թիւ 28-ը կը թուի ըլլալ լաւագոյնը:

# AVE MARIA

## pour Mezzo-Soprano ou Baryton avec accompagnement de piano (1ère version)

«Աւէ Մարիա»-յի Ա. տարբերակի դաշնակի փոխադրութիւնը՝ զոր Չուհաճեան հաւանաբար իրագործած ըլլայ, կը բացակայի ԳԱԹ, ՉԴ-ին մէջ: Մեներգիչի աշխատանքը դիւրացընելու նպատակով, յարմար նկատեցինք կազմելու հրատարակել զայն, մեր փոխադրութեամբ:

# AVE MARIA

## pour Mezzo-Soprano ou Baryton avec accompagnement de piano (2ème version)

1914 թուականին, Փարիզի մէջ, Լեւոն Համբարձումեանի ջանքերով կը հրատարակուի Տ. Չուհաճեանի «Աւէ Մարիա»-ն:

Տիտղոսաթերթին վրայ գրուած է հետեւեալը.

**Ave Maria, pour Mezzo-soprano ou Baryton avec accompagnement de piano par Dikran Tchouhadjian, 1883. 2ème Edition, 1914, Paris.**

Հրատարակիչը ոչ մէկ նշում ըրած է իր աղբիւրին մասին: Ըստ Կ. Պոլսոյ «Ազատամարտ»-ին, այս «Աւէ Մարիա»-ն հրատարակուած է Չուհաճեանի զաւակին հաւանութեամբ [1]:

Բ. հրատարակութիւն (2ème Edition) չի նշանակեր Բ. խմբագրութիւն, սակայն, ինչպէս նշեցինք, ասիկա կը ներկայացնէ ստեղծագործութեան Բ. տարբերակը:

«Աւէ Մարիա» մը հրատարակուած է Չուհաճեանի կենդանութեան [2] զոր չկրցանք ձեռք բերել:

Փարիզի տպագրութիւնն է՝ զոր կը վերահրատարակենք այստեղ:

--------------------

1.- Տե՛ս »Ազատամարտ«, օրաթերթ, Կ. Պոլիս, 26 Յունուար / 8 Փետրուար 1914, թիւ 1425, էջ 2:

2.- Տե՛ս Ղազարոս քահ. Յովսէփեան, Տիգրան Չուհաճեան, »Նոր-դար«, Թիֆլիս, 20 Մայիս 1898, թիւ 85, էջ 3. ինչպէս նաեւ՝ Չուհաճեանի դաշնակի հրատարակուած ստեղծագործութիւններուն վերջին էջին մէջ նշանակուած հեղինակի երկերու ցուցակները:

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**Հատած 14.**

Մոռցուած է ռէ ձայնանիշին պեմոլը:

**Հատած 15.**

Մոռցուած է սի ձայնանիշին պեքարը:

**Հատած 54.**

Մոռցուած է արբէժի առաջին սիին պեքարը:

**Հատած 74.**

Զորրորդ քառորդ ձայնանիշը մեներգիչի նուագամասին մէջ գրուած է տօ, դաշնակին՝ ռէ: Համեմատելով զայն թիւ 27/ 6-ի Flauti I, II-ին, Oboe I-ին ու Violino I-ին (Հատած 70) եւ թիւ 28ա-ի (տե՛ս այս հատորը, էջ 39) ջութակի նուագամասին (Հատած 74) հետ, դժուար չէ որոշել՝ թէ մեներգիչի տօն է, որ պէտք է փոխուի ռէի:

**Հատած 84.**

Դաշնակի աջ եւ ձախ ձեռքերուն առաջին քառորդին համար գրուած է մէկ քառորդ ձայնանիշ եւ ութերորդական ձայնահատ, որով հատածին տեւողութիւնը կ'աւելնայ ութերորդական տեւողութեամբ: Յարմար դատեցինք առաջին քառորդ տեւողութեամբ ձայնանիշը վերածել ութերորդականի:

# AVE MARIA

## pour violon avec accompagnement de Piano

## (2ème version)

ԳԱԹ, ՁԴ-ի թիւ 28ա թղթածրարը կը բովանդակէ «Աւէ Մարիա»-յի ջութակի առանձին նուագամաս մը եւ հատուած մը նուագագրութեան սեւագրութենէն, բոլորն ալ ինքնագիր ու անվերնագիր:

Առաջինը՝ որ այստեղ տպագրուածն է, գրուած է մատիտով: Թէեւ ոչ մէկ նուագարանի յիշատակում կայ, սակայն մատնաշարի եւ աղեղի նշումներէն դժուար չէ եզրահանել՝ որ ան մենանուագ ջութակի համար նախատեսուած է:

Չկրցանք որոշել՝ թէ մատնաշարի եւ աղեղի նշումները Զուհաճեանի ձեռագիրով են նշանակուած թէ ոչ: Այնուամենայնիւ, զանոնք անփոփոխ պահպանեցինք:

Ձեռագիրը կը յարի Բ. տարբերակին եւ՝ բացի մանր տարբերութենէ մը (հմմտ. հատած 23), նման է Փարիզի տպագրութեան մեներգիչի եղանակին:

Ուրեմն, Զուհաճեան նախատեսած է նաեւ «Աւէ Մարիա»-յին կատարումը ջութակով: Ասիկա բնական եւ ընդունուած երեւոյթ մըն էր վիպապաշտ շրջանի կատարողական արուեստին մէջ: Շուպերթի, Պախ - Կունոյի «Աւէ Մարիա»-ները, սիրուած երգեր ու ռոմանսներ յաճախ կը մեկնաբանուէին ջութակի փոխադրութեամբ, նոյնիսկ հռչակաւոր ջութակահարներու նուագածութեամբ:

Զուհաճեանի «Աւէ Մարիա»-յի ջութակի տարբերակին մասին ոչ մէկ պատմական տեղեկութիւն գտնուած է, բայց մատնաշարի եւ աղեղի նշումները փաստեր են անոր կատարումին մասին:

Զայն պէտք է նուագել երգի համար գրուած Բ. տարբերակի դաշնակի նուագակցութեամբ:

Ինչպէս նախապէս նշեցինք, Թիւ 27/ 1ա-2-ի հատածներ 9-20-ը մաքրագրուելէ ետք՝ ամբողջութեամբ խազուած են, իսկ նոր տարբերակը գրուած չէ: Սրբագրուած տարբերակը իրագործուած է Թիւ 28-ի մէջ (մանրամասն տե՛ս Աղբիւրներ եւ ծանօթագրութիւններ գլուխը, էջ 44):

Հիմնուելով գլխաւորպէս Թիւ 27/ 1ա-2-ին, ինչպէս նաեւ Թիւ 28-ի սկզբնագրութեան հետքերուն վրայ, կարելի եղաւ վերականգնել յիշեալ հատածներուն նախնական տարբերակը:

Զուհաճեանի ստեղծագործական յղացքի եւ ոճի բիւրեղացումին ընթացքը ուսումնասիրելու համար կարեւոր դատելով անոր հրապարակումը, զայն կը տպագրենք ստորեւ:

Այս երկու տարբերակներուն[1] համեմատութիւնը ցոյց կու տայ, թէ Զուհաճեան էական փոփոխութիւններ ներմուծած է հիւսուածքի եւ գործիքաւորումի տեսանկիւնէն: Մեղեդին, դաշնակումները եւ կառուցուածքը մնացած են անփոփոխ:

Հատածներ 9-12-ի նախնական (այսուհետեւ՝ Ա.) եւ սրբագրուած (այսուհետեւ՝ Բ.) տարբերակները հիւսուածքի առումով նոյնն են, միայն այն տարբերութեամբ՝ որ Ա.-ին մէջ մեղեդիին կը կրկնապատկէ Violino I-ն, Բ.-ին մէջ՝ Clarinetto I-ն: Վերջինը, ծաւալելով լարայիններուն ընդհանուր յետնախորքին վրայ, կը ստանայ իր առանձնակի հնչեղութիւնը:

Բ.-ին մէջ, հատածներ 10-ի եւ 12-ի սկիզբը (երկու դասոյթներու երկրորդ ենթադասոյթին սկիզբը) աւելցուած բամբերը յենարան մը կը ստեղծեն մեղեդիին համար: Նկատելի է, որ այս բամբերը առկայ են Փարիզի տպագրութեան մէջ, որ կը հաստատէ վերջինին Բ. տարբերակին վարկածը, քանի որ եթէ ան յօրինուած ըլլար Թիւ 27-էն առաջ, այս նորամուծ բամբերը արտացոլուած պիտի չըլլային իր մէջ:

Կարեւոր փոփոխութիւններ կը գտնուին հատածներ 13-16-ին մէջ:

Ա.-ին խիտ գործիքաւորումը՝ ուր բացի հարուածայիններէն կը մասնակցի ամբողջ նուագախումբը, աւելորդ ծանրաբեռնուածութիւն մըն է նորափթիթ մեղեդիի հեզասահ բնոյթին նկատմամբ: Բ.-ին մէջ նկատելիօրէն գեղչուած է հիւսուածքը, ջնջուած փայտէ եւ պղինձէ փողայիններուն մեծ մասը: Այսպէս, աւելի համոզիչ կը հնչեն նաեւ յետագայի բարձրակէտային tutti-ները:

Բ.-ի հատածներ 16-20-ին մէջ, գլխաւոր մեղեդին Violino I-ին փոխարէն կը նուագեն Flauto I-ն եւ Oboe I-ն (հատածներ 16-18), վերացած է հատած 18-ի լարայիններուն թրեմոլոն, եւ հատած 19-ի Flauto I-ին արբէժը ձերբազատուած է իրեն նախորդող ու յաջորդող ձայնանիշերէն՝ որով կատարողական առումով դարձած սահուն:

Իրօք, Բ.-ը համեմատաբար աւելի յղկուած է ու նրբահիւս:

--------------------

1.- Չշփոթել ամբողջ «Աւէ Մարիա»-յի Ա. եւ Բ. տարբերակներուն հետ: Խօսքը այստեղ Ա. տարբերակին մէջ գոյութիւն ունեցող երկու տարբերակներուն մասին է:

# ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**Հատած 11.** Viola.

Թիւ 27/ 1ա-ին մէջ սրբագրուած է այսպէս.



**Հատած 13.** Oboe II.

Վերականգնեցինք ըստ Թիւ 28/ 12,13-ին:

Թիւ 27/ 1ա-ի սկզբնականին մէջ տօին փոխարէն գրուած է հնգեակ ցած գտնուող ֆան:

**Հատած 13.** Violino II.

Թիւ 27/ 1ա-ին մէջ ան սրբագրուած է այսպէս.




**Հատածներ 13-14.** Violino I.

Թիւ 27/ 1ա-2-ին մէջ կը կրէ բազմահերթ սրբագրութիւններ, զորս դժուար է զատորոշել իրարմէ: Այստեղ տպագրուածը կը թուի ըլլալ նախնականը:

**Հատածներ 13-14.** Viola.

Թիւ 27/ 1ա-2-ին մէջ ան սրբագրուած է այսպէս.



Թիւ 27/6-7-ի հատածներ 74-85-ի քանի մը նուագարան (Cornetti I, II, Tromboni I, II, III, Bombardone, Violino II) կը կրեն սրբագրու-թիւններ՝ որոնք արտացոլուած են Թիւ 28-ին մէջ: Այս երկու բնագիրներուն օգնութեամբ կարելի եղաւ վերականգնել սկզբնականը, զոր կը հրապարակենք ստորեւ: Կը տպագ-րենք լոկ սրբագրութիւններ կրող նուագա-րանները: Տարբերութիւնները երկու տարբե-րակներուն միջեւ այնքան ծաւալուն չեն՝ որքան հատածներ 9-20-ի սրբագրութիւն-ները (տե՛ս Յաւելուած 1): Փոքրիկ, էական վրձինահարուածներ են՝ յանուն որոշ տռա-մաթիք ազդեցութիւններու զօրեղացումին:

## ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

**Հատածներ** 81-82. Violino II. Թիւ 27/ 6ա.- Սրբագրուած են եւ վերած-ուած հատածներ 79-80-ին նման:

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ԲԱՌԱՑԱՆԿ ՕԳՏԱԳՈՐԾՈՒԱԾ ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԵԶՐԵՐՈՒ

| | |
|---|---|
| Բամբ | Basse |
| Բնուղիղ | Diatonique |
| Գործիքաւորում | Orchestration |
| Դաշնակութիւն | Harmonie |
| Դաշնակում | Harmonisation |
| Դաշնեակ | Accord |
| Դասոյթ | Phrase |
| Ենթադասոյթ | Motif |
| Երաժշտահան | Compositeur |
| Երանգանիշ | Nuance |
| Երրեակ | Tierce |
| Զարտուղութիւն | Modulation |
| Զուգահեռ | Relative |
| Ընթացք | Tempo |
| Լարային | A corde |
| Կառուցուածք | Forme |
| Կատարեալ յանգաձեւ | Cadence parfaite |
| Կիսաձայն | Demi-ton |
| Կշռոյթ | Rythme |
| Հատած | Mesure |
| Հարուածային նուագարան | Percussion |
| Հիմնաձայն | Tonique |
| Հիւսուածք | Facture |
| Հնգագիծ | Portée |
| Հնգեակ | Quinte |
| Հնչամաս | Registre |
| Հպում | Touche |
| Ձայնակապ | Legato |
| Ձայնակայք | Tonalité |
| Ձայնահատ | Silence |
| Ձայնամիջոց | Intervalle |
| Ձայնանիշ | Note |
| Ձայնառութիւն | Note de pédale |
| Մեծալար | Majeur |
| Մեծացած | Augmenté |
| Մեղեդի | Mélodie |
| Յանգաձեւ | Cadence |
| Նուագագրութիւն | Partition d'orchestre |
| Նուագակցութիւն | Accompagnement |
| Նուագավար | Chef d'orchestre |
| Նուագավար | Instrument |
| Ութեակ | Octave |
| Ութերորդական | Croche |
| Պղինձէ փողային | Cuivre |
| Վեցեակ | Sixte |
| Տասնվեցերորդական | Double croche |
| Փայտէ փողային | Bois |
| Փոքրալար | Mineur |
| Փոքրացած եօթնեակ | Septième diminué |
| Քառեակ | Quarte |
| Քառորդ | Noire |

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գահիրէի Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան «Սաքենիկ Ճ. Չագըր հիմնադրամ»-ը՝ Հայկ Աւագեանի խմբագրութեամբ եւ ծանօթագրութեամբ լոյս ընծայած է հետեւեալ երաժշտական հատորները.

1.-**Տիգրան Զուհաճեան**, *Սուրբ, սուրբ*, քառերգի եւ սենեկային նուագախումբի համար եւ *Հայր մեր*, սոփրանոյի, ալթոյի, իգական երգչախումբի եւ սենեկային նուագախումբի համար, Գահիրէ, 1999 (74 էջ)

2.-**Տիգրան Զուհաճեան**, *Արշակ Բ.*, օփերա չորս արարով, իտալերէն լիպրեթթոյով, Գահիրէ, 2000

ա.-Դաշնակի եւ երգի համար (vocal score) (440 էջ)
բ.-Նուագագրութիւն (orchestral score) (804 էջ)
գ.-Առանձին նուագարաններ՝ կազմուած 24 հատորէ (1549 էջ

3.-**Տիգրան Զուհաճեան**, *Կաւոթ*, ջութակի, թաւ ջութակի, դաշնակի եւ հարմոնիումի համար եւ *Զորս փիւկ*, լարային եռանուագի եւ քառանուագի համար, Գահիրէ, 2000 (52 էջ)

4.-**Քրիստափոր Կարա-Մուրզա**, *Դաշնակի ստեղծագործութիւններ*, Գահիրէ, 2000 (34 էջ)

5.-**Մակար Եկմալեան**, *Դաշնակի ստեղծագործութիւններ*, Գահիրէ, 2000 (54 էջ)

6.-**Ալեքսանդր Սպենդիարեան**, *Գուշակուհին*, քառաձեռն դաշնակի համար, Գահիրէ, 2000 (22 էջ)

7.-**Արքատի Քուկէլ**, *Էջեր ալպոմէն* եւ *Հայկական պար*, դաշնակի համար, Գահիրէ, 2000 (18 էջ)

# ديكران تشوهاچيان

## أڤى ماريا

التحرير الموسيقى والتعليقات
هايج أڤاكيان

القاهــرة

٢٠٠٠